Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 16 1949

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն. *Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 2—52—78։*

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ԱԿԱՆԱՎՈՐ ԳՈՐԾԻՉԸ

*Մի տարի առաջ, 1948 թվի օգոստոսի 31-ին, ծանր հիվանդությունից հետո մահացավ կոմունիստական պարտիայի և սովետական պետության ականավոր գործիչ, Համ. Կ(բ)Պ Քաղբյուրոյի անդամ, ՀամԿ(բ)Պ Կենտկոմի քարտուղար Ա. Ա. Ժդանովը։*

*Բոլշևիկյան պարտիայի հավատարիմ զավակ Ա. Ա. Ժդանովը իր ամբողջ կյանքը նվիրեց կոմունիզմի գործին ծառայելուն։*

*Հանուն սովետական հայրենիքի բարօրության իր գործունեությամբ, իր անձնվեր նվիրվածությամբ կոմունիզմի գործին, մեծ Ստալինի հավատարիմ աշակերտ և զինակից Ա. Ա. Ժդանովը պարտիայի և Սովետական Միության բոլոր աշխատավորների սիրուն է արժանացել։*

*Ա. Ա. Ժդանովի ամբողջ կյանքը կոմունիզ-*

մի համար մղվող պայքարի հրաշալի օրինակ է հանդիսանում։ Դեռևս ուսանվեց ամյա պատանի, նա մտավ ռևոլյուցիոն շարժման մեջ (1912 թ.), մասնակցելով Տվեր քաղաքի (այժմ Կալինին քաղաք) սովորող երիտասարդության սոցիալ-դեմոկրատական խմբակներում։ 1915 թվին Ա. Ա. Ժդանովը մտավ բոլշևիկյան պարտիայի շարքերը և շատով դարձավ պարտիական աշխատող։ Առաջին համաշխարհային պատերազմի ժամանակաշրջանում կանչված լինելով բանակ, նա զինվորների մեջ անդադրում բոլշևիկյան պրոպագանդա էր անում, Ուրալում մասնակցեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի նախապատրաստմանը և անցկացմանը։

Քաղաքացիական պատերազմի և օտարերկրյա ինտերվենցիայի դաժան տարիներին, Ա. Ա. Ժդանովը կոմունիստական պարտիայի այն գործիչների թվումն էր, որոնք զբաղվում էին Կարմիր Բանակի քաղաքական լուսավորությամբ։ Պարտիայի խաղաղ աշխատանքի անցման, ժողովրդական տնտեսության վերականգնման ժամանակաշրջանում Ա. Ա. Ժդանովը անձնվիրաբար աշխատում էր պարտիական և սովետական շինարարության տարբեր բնագավառներում։



Նա մասսաների բոլշևիկյան ղեկավարի և կազմակերպչի ուղի անցավ՝ սկսած պարտիական գավառական կոմիտեի նախագահից մինչև Համամիութենական Կոմունիստական Պարտիայի Կենտրոնական Կոմիտեի քարտուղար և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Քաղբյուրոյի անդամ։

Ա. Ա. Ժդանովը աննկուն պայքար էր մղում բոլշևիկյան պարտիայի լենինյան-ստալինյան գլխավոր գծի համար։ 1924—1934 թվականներին լինելով Գորկու նահանգկոմի, ապա և երկրային կոմիտեի քարտուղարի պոստում, նա բարձր պահեց բոլշևիկյան պարտիականության դրոշը, ոգևորությամբ պաշտպանեց կոմունիզմի իդեական դիրքերը։

ՀամԿ(բ)Պ 14-րդ համագումարում Ա. Ա. Ժդանովը ընտրվում է ՀամԿ(բ)Պ Կենտկոմի անդամության թեկնածու, 16-րդ համագումարում՝ ՀամԿ(բ)Պ Կենտկոմի անդամ, 17-րդ համագումարից հետո՝ ՀամԿ(բ)Պ Կենտկոմի քարտուղար, ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Քաղբյուրոյի անդամության թեկնածու։ 1934 թվին, Ս. Մ. Կիրովի չարանենգ սպանությունից հետո Ա. Ա. Ժդանովը պարտիայի կողմից ուղարկվեց Լենինգրադ։ 1934—1944 թվականների ընթացքում գլխավորելով Լենինգրադի պարտիական կազմակերպությու-

նը, Ա. Ա. Ժդանովը արժանացավ Լենինի քաղաքի աշխատավորության ջերմ սիրուն և հարգանքին։ Պարտիայի 18-րդ համագումարից հետո նա ընտրվեց ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Քաղբյուրոյի անդամ։

Հայրենական մեծ պատերազմի տարիներին Ա. Ա. Ժդանովը պարտիայի և կառավարության հանձնարարությամբ մեծ աշխատանք կատարեց Լենինգրադի պաշտպանությունը կազմակերպելու գործում։ Հայրենական մեծ պատերազմում հաղթանակ տանելուց հետո, երբ պարտիան և ժողովուրդը անցան խաղաղ շինարարության, Ա. Ա. Ժդանովը մեծ ուշադրություն էր դարձնում կյանքում կենսագործելու պարտիայի, ընկեր Ստալինի ցուցումները՝ սովետական ժողովրդի կոմունիստական դաստիարակության մասին։ Նա հանդես եկավ մի շարք զեկուցումներով՝ գրականության, արվեստի, փիլիսոփայության հարցերի մասին։ Նա պայքարում էր այն բանի համար, որպեսզի իդեոլոգիական ֆրոնտի աշխատողները համարձակորեն առաջ քաշեն նոր թեորետիկական հարցեր, ընդհանրացնեն ՍՍՌՄ-ում սոցիալիստական շինարարության հարուստ փորձը, առաջ շարժեն սովետական հասարակության և պետության թեորիան, ժամանակակից բը-



նագիտության, էտիկայի և էսթետիկայի թեորիան։

Լինելով սովետական հայրենիքի ջերմ հայրենասեր, Ա. Ա. Ժդանովը վճռականորեն պայքարում էր Արևմուտքի բուրժուական կուլտուրայի հանդեպ ստորաքարշության դեմ։ Նա խոսում էր սովետական կարգի վեհության մասին, մեր ժողովրդի կողմից ըստեղծված նոր, սոցիալիստական բարոյականության մասին։ Ինչպիսի՜ ուժով են հընչում ընկեր Ժդանովի խոսքերը սովետական մարդկանց նոր հոգևոր կերպարի մասին. «Դուք որտե՞ղ կգտնեք այնպիսի ժողովուրդ և այնպիսի երկիր, ինչպես մեզ մոտ։ Դուք որտե՞ղ կգտնեք մարդկանց այնպիսի հոյակապ հատկություններ, ինչպիսիք ցույց տվեց մեր սովետական ժողովուրդը Հայրենական մեծ պատերազմում և ինչպիսիք նա յուրաքանչյուր օր ցույց է տալիս աշխատանքային գործերում, անցնելով տնտեսության ու կուլտուրայի խաղաղ զարգացմանը և վերականգնմանը։ Յուրաքանչյուր օր մեր ժողովուրդն ավելի ու ավելի է վեր բարձրանում։ Մենք այսօր այն չենք, ինչ երեկ էինք, վաղը այն չենք լինի, ինչ այսօր ենք»։

Ա. Ա. Ժդանովը առանձին ուժով էր ընդգծում քննադատության և ինքնաքննադատու-

թյան նշանակությունը կադրերի և մասսաների բոլշևիկյան դաստիարակության գործում։ «Ընկեր Ստալինը մեզ սովորեցնում է,— ասում էր ընկ. Ժդանովը,— որ եթե մենք ցանկանում ենք պահպանել կադրերը, սովորեցնել և դաստիարակել նրանց, մենք չպետք է վախենանք որևէ մեկին նեղացնելուց, չպետք է վախենանք սկզբունքային, համարձակ, անկեղծ և օբեկտիվ քննադատությունից... Միայն համարձակ և բացահայտ քննադատությունն է օգնում մեր մարդկանց կատարելագործվելու, քաջալերում է նրանց առաջ ընթանալու, հաղթահարելու իրենց աշխատանքի թերությունները... Նա, ով վախենում է իր աշխատանքի քննադատությունից, նա արգահատելի վախկոտ է, արժանի չէ ժողովրդի կողմից հարգանքի»։

Մեծ Ստալինի հավատարիմ աշակերտ Ա. Ա. Ժդանովը մեր կադրերին կոչ էր անում աշխատել ստալինաբար։ Դիմելով տեղական աշխատողներին, նա ասում էր. «Ստալինյան Կենտկոմի աշխատանքի ոճը՝ դա բարձր սկզբունքայնության համատեղումն է գործի մանրունքի մեջ ներթափանցելու հետ, դա խոսքի և գործի միասնությունն է, ստորին աշխատողների լայն ներգրավումն է քաղաքականության և պրակտիկայի կարևո-



րագույն հարցերի քննարկման մեջ, պարտիայի որոշումները կյանքում կենսագործելիս՝ երկաթյա կարգապահությունն է, և այս պետք է դառնա պարտիայի բոլոր աշխատողների սեփականությունը»։

Ա. Ա. Ժդանովը գտնվում էր միջազգային բանվորական շարժման ղեկավար գործիչների առաջավոր շարքերում։ Նա մեծ ներդրում կատարեց դեմոկրատական ուժերի համախմբման և իմպերիալիստական ռեակցիայի դեմ նրանց մղած պայքարի գործում։ Նա անողորմ կերպով մերկացնում էր ժողովուրդների ազատության և անկախության թշնամիներին, նոր պատերազմի հրձիգներին։

Ա. Ա. Ժդանովի կյանքն ու գործունեությունը կոմունիզմի համար մղվող բոցաշունչ պայքարի ոգեշնչող օրինակ է։

# ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԻ ՄԱՍՍԱՅԱԿԱՆԱՑՈՒՄԸ ՕԳՆՈՒՄ Է ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՎԵՐԵԼՔԻՆ

*Ստալինյան հնգամյակների շնորհիվ անճանաչելիորեն փոխվել է Կիրովականի տեսքը. մի արդյունաբերական փոքրիկ քաղաքից այն այսօր վեր է ածվել արդյունաբերական բազմաթիվ ու բազմապիսի ձեռնարկություններ ունեցող խոշոր սոցիալիստական քաղաքի։ Մեծ տեմպերով առաջ է գնում քաղաքի սոցիալիստական նորակառույցների շինարարությունը։ Քաղաքի բանվորները, ծառայողները, ինժեներներն ու տեխնիկները, ամբողջ աշխատավորությունը լցված են ստալինյան նոր հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու բուռն ցանկությամբ։*

*Աշխատավորության այդ խանդավառությունը ղեկավարելու, սոցիալիստական մրցությունը լայնորեն ծավալելու համար վճռական նշանակություն ունի ագիտացիոն-մասսայական աշխատանքի ճիշտ դրվածքը գործարաններում, ֆաբրիկաներում ու նորակա-*



*ռույցներում։ Բազմաթիվ փաստերով և օրինակներով կարելի է ցույց տալ, թե ինչպես պարտիական կազմակերպությունների կողմից բանվորների մեջ ագիտացիոն-մասսայական աշխատանքի լավագույն կազմակերպման շնորհիվ Կիրովականի արդյունաբերական շատ ձեռնարկություններ աչքի ընկնող հաջողություններ են ձեռք բերել՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի որակի լավացման պետական առաջադրանքները կատարելու գործում։*

*Քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների և նորակառույցների աշխատողների մեջ ագիտացիոն-մասսայական աշխատանք ծավալելու առաջամարտիկներն են հանդիսանում պարտիական կազմակերպությունների կողմից առաջադրված ագիտատորները։ Դրանք քաղաքական լավ պատրաստականության տեր, իրենց աշխատանքում աչքի ընկած, բանվորների մեջ հեղինակություն վայելող մարդիկ են։ Համախմբված լինելով ագիտկոլեկտիվներում, ագիտատորները արտադրության մեջ հանդիսանում են պարտիական կազմակերպությունների անմիջական օգնականները՝ մեր պարտիայի և կառավարության որոշումները մասսայականացնելու, ձեռնարկության առաջ կանգնած*

խնդիրների կենսագործման համար բոլոր աշխատողների ուժերը մոբիլիզացնելու գործում։

Գործարաններում, ֆաբրիկաներում, նորակառույցներում, արտելներում ծավալված ագիտացիոն-մասսայական աշխատանքը մեծ չափով նպաստեց այն բանին, որ քաղաքի արդյունաբերությունը կատարեց և գերակատարեց այս տարվա անցած 7 ամիսների ծրագիրը։

Հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար բանվորների ուժերը մոբիլիզացնելու սոցիալիստական մրցության բոցը բորբոքելու լավագույն օրինակ է տալիս Ալ. Մյասնիկյանի անվան Քիմգործարանի պարտկազմակերպության ագիտկոլեկտիվը, որի ղեկավարն է պարտբյուրոյի քարտուղար ընկ. Բ. Սարգսյանը։

Այս գործարանի հիմնական արտադրական ցեխը հանդիսանում է առաջին ցեխը։ Մինչև այս տարվա սկիզբը այն սիստեմատիկաբար թերակատարում էր իր առաջադրանքները, հաճախակի տալիս էր ցածրորակ արտադրանք։ Ելնելով գործարանի ունեցած հնարավորություններից, կառավարությունը նրան այս տարվա համար տվեց նոր, ավելի բարձր առաջադրանք։ Այդ բանը գործարանի



մի շարք աշխատողների մեջ թերահավատություն առաջացրեց պլանները ռեալ լինելու վերաբերյալ, եղան խոսակցություններ այն մասին, որ գործարանը հնարավորություն չունի այդ առաջադրանքը կատարելու։ Բայց գործարանի պարտիական կազմակերպությունը կանգնեց պետական առաջադրանքները կատարելու ճիշտ ուղու վրա։ Պարտիական կազմակերպությունը միահամուռ կերպով հավանություն տվեց կառավարության կողմից առաջադրված ավելացված պլանին և կոնկրետ ուղիներ նշեց այն կատարելու համար։ Իր որոշման մեջ պարտիական կազմակերպությունը առաջնակարգ տեղ հատկացրեց նաև գործարանի բոլոր աշխատողների մեջ ագիտացիոն-մասսայական աշխատանքը լայնորեն ծավալելու, բանվորների մեջ իրենց ուժերի նկատմամբ վստահություն ներշնչելու գործին։

Պարտկազմակերպության հանձնարարությամբ կառավարության տված նոր առաջադրանքը կատարելու հարցը քննության առնըվեց նաև ագիտկոլեկտիվի ժողովում, ուր յուրաքանչյուր ագիտատորի կոնկրետ ցուցումներ տրվեցին իր անելիքների վերաբերյալ։ Հենց իրենք, ագիտատորները, որոնք մեծ մասամբ արտադրության առաջավորներ են,

կոնկրետ պարտավորություններ ստանձնե-
ցին պլանները կատարելու և գերակա-
տարելու համար։ Եվ ահա գործարանում
ամենուրեք գործարար մրցություն սկսվեց
նոր, ավելացրած պլանների ոչ միայն կա-
տարման, այլև գերակատարման համար։
Մրցության մեջ առաջին շարքերում քայլում
էին կոմունիստները, ագիտատորները։ Աշ-
խատանքը նոր ձևով կազմակերպելու, վա-
ռարանների կարողությունները լրիվ օգտա-
գործելու, բանվորների խանդավառությունը
գլխավորելու գործում լավագույն օրինակ էր
տալիս առաջին ցեխի վարիչ, կոմունիստ
ագիտատոր ընկ. Պ. Օհանյանը։ Նրա օգնու-
թյամբ ցեխի բրիգադաներից առաջինը
Սիրեկան Ամիրխանյանի ղեկավարած բրի-
գադան հունվար ամսին կատարեց և գերա-
կատարեց իր պլանը, տալով միայն բարձրո-
րակ արտադրանք։ Ագիտատոր Օհանյանը
լայնորեն մասսայականացրեց և ամբողջ
ցեխի սեփականությունը դարձրեց Ամիրխան-
յանի բրիգադայի աշխատանքի փորձը,
ոգեշնչելով նրանց այդ օրինակով աշխատե-
լու։ Օհանյանի նախաձեռնությամբ բանվոր-
ների հետ սիստեմատիկ զրույցներ ու-
նեցավ ինժեներ-տեխնոլոգ ընկ. Պետրոս-
յանը, որը վերլուծելով առաջավոր բրիգադա-



ների աշխատանքի փորձը, սովորեցնում էր
նրանց նոր ձևով աշխատելու։

Եվ ահա քաղաքական-մասսայական այս
եռուն աշխատանքը տվեց իր փայլուն ար-
դյունքները. հենց հունվար ամսին առաջին
ցեխը ոչ միայն կատարեց, այլև գերակա-
տարեց պետական նոր, ավելացրած առաջա-
դրանքը։ Այդ ժամանակից սկսած Քիմիական
գործարանը, նրա հիմնական՝ առաջին ցեխը
սիստեմատիկ կերպով գերակատարում են
իրենց պլանները։

Երբ առաջին ցեխի բանվորների ձեռք բերած
հաջողությունները դրվեցին ամուր հիմքերի
վրա, ՀԿ(բ)Պ Կիրովականի շրջանային կոմի-
տեն որոշեց նրանց փորձը տարածել ինչպես
ամբողջ գործարանում, այնպես և քաղաքի
մյուս արդյունաբերական ձեռնարկություն-
ներում։ Շրջանային կոմիտեի հանձնա-
րարությամբ գործարանի առաջավոր
մարդիկ, ագիտատորները գնացին քա-
ղաքի մյուս գործարաններն ու ֆաբրի-
կաները և պատմեցին իրենց աշխատանքի
փորձի մասին։ Այսպես օրինակ, տրիկոտաժ
ֆաբրիկայում և երկաթուղայինների մոտ
զրույցներ ունեցավ ագիտատոր Պ. Օհանյա-
նը, գործվածքային գործարանում՝ Ս. Սարգս-
յանը, հացի գործարանում՝ Ժ. Պիսկուլյանը

և այլն։ Առաջավոր բանվորների օրինակը մեծ խանդավառություն առաջացրեց քաղաքի մյուս արդյունաբերական ձեռնարկությունների աշխատողների մեջ, որոնք նորանոր պարտավորություններ վերցրին 1949 թվի պլանները ժամկետից շուտ կատարելու վերաբերյալ։

Իսկ առաջին ցեխի բանվորները օգոստոս ամսին նոր, խոշոր հաղթանակ ձեռք բերին։ Ամսի 24-ին նրանք կատարեցին 1949 թվականի պլանը, որը նրանք պարտավորվել էին կատարել նոյեմբերի 7-ին։

Ագիտացիոն-մասսայական աշխատանքը լավագույն ձևով կազմակերպելու շնորհիվ արտադրողականության բարձրացման գործում աչքի ընկնող հաջողությունների է հասել նաև քիմգործարանի բնակարանային շինարարության պարտիական կազմակերպությունը։ Այստեղ ագիտատորների լավագույն աշխատանքի շնորհիվ յուրաքանչյուր բանվոր որոշակի կերպով գիտե ինչպես ամբողջ շինարարության, այնպես և իր տեղամասի ու իր անձնական առաջադրանքները։ Ամենօրյա զրույցների, բազմակողմանի ցուցադրական ագիտացիայի շնորհիվ ագիտատորները կառուցող յուրաքանչյուր բանվորի պատմում են ոչ միայն նրանց վաղվա անելիքների



մասին, այլև այն մասին, թե նա ինչպես աշխատեց երեկ և դրա դիմաց որքան վաստակեց։

Այն տեղամասը, որտեղ որպես ագիտատոր աշխատում է ընկ. Ս. Հարությունյանը, սիստեմատիկ կերպով կատարում ու գերակատարում էր իր պլանները։ Ագիտատոր Հարությունյանը իր աշխատանքը տարավ այն ուղղությամբ, որ իրենց տեղամասում պլանները կատարեն բոլոր բանվորները և նա հասավ հիանալի արդյունքների։ Հուլիս ամսին տեղամասն իր պլանը կատարեց 170 տոկոսով, յուրաքանչյուր բանվորի աշխատանքի արտադրողականությունը կազմեց 115 ռուբլի, պլանով տրված 93 ռուբլու փոխարեն և իրենց պլանները կատարեցին բոլոր բանվորները։

Ագիտատոր Ս. Հարությունյանի օրինակը եզակի չէ շինարարության վրա։ Այժմ շինարարության բոլոր ագիտատորները պայքարում են, որպեսզի իր պլանները կատարի յուրաքանչյուր կառուցող բանվոր։ Եվ եթե շինարարության հուլիս ամսվա պլանը կատարվեց 144 տոկոսով, ապա այդ գործում իրենց պատվավոր տեղն ունեն ագիտատորները։

Բայց քաղաքի պարտիական կազմակեր-

պությունները և նրանց ագիտկոլեկտիվները չեն հանգստանում ձեռք բերած հաջողություններով, պլանները քանակապես կատարելու հետ միասին նրանք պայքարում են նաև արտադրանքի որակի բարձրացման համար։ Եվ այդ գործում էլ արդեն քաղաքի մի քանի արդյունաբերական ձեռնարկություններ ձեռք են բերել զգալի հաջողություններ։ Այսպես օրինակ, բարձրորակ արտադրանք տալու համար մղվող պայքարի շնորհիվ Մուշտակի ֆաբրիկան պլանով նախատեսված 80 տոկոս առաջին տեսակի արտադրանքի փոխարեն տալիս է 92 տոկոս առաջին տեսակի արտադրանք, Գործվածքային ֆաբրիկայում առաջին տեսակի արտադրանքը կազմում է 98,5 տոկոս։

Ահա այսպես, խորը կերպով գիտակցելով մեր պարտիայի կողմից իրենց վրա դրված պատվավոր գործի ամբողջ պատասխանատվությունը, Կիրովական քաղաքի ագիտատորները մոբիլիզացնում են արդյունաբերական ձեռնարկությունների աշխատողների ջանքերը՝ ստալինյան նոր հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար։

Ի. ՊԱՊԻԵՎ

ՀԿ(Բ)Պ Կիրովականի շրջկոմի քարտուղար։

# ԱԳԻՏԱՑԻԱՆ ՆՈՐԱԿԱՌՈՒՅՑՆԵՐՈՒՄ

Ինչպես ամբողջ Սովետական Միության մեջ, այնպես և մեր ռեսպուբլիկայում, ըստ ստալինյան հնգամյա պլանի կատարվում է բնակարանային խոշոր շինարարություն։ Օր ավուր բարելավվում են աշխատավորության բնակարանային-կենցաղային պայմանները, հարյուրավոր ու հազարավոր ընտանիքներ ստանում են նոր, բարեկարգ բնակարաններ։

Ոգեշնչված նոր հնգամյա պլանի փայլուն նախագծումներով, կառուցողները բուռն խանդավառությամբ պայքարում են հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու, աշխատավորությանը ավելի մեծ թվով ու լավագույն բնակարաններ տալու համար։ Կառուցողների այդ խանդավառությունը գլխավորելու, նրանց մեջ սոցիալիստական մրցությունը և ստախանովյան շարժումը ծավալելու, պետական առաջադրանքները կատարելու գործում նրանց օգնելու պարտականությունը դրված է շինարարությունների պարտիական կազմակերպությունների ու նրանց ագիտկոլեկտիվների վրա։

Պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ ագիտատորները պետք է օգնեն կառուցողներին տիրապետելու աշխատանքային նոր ձևերին ու մեթոդներին, լիովին յուրացնեն շինարարական նորագույն տեխնիկան և ամենուրեք կիրառեն այն, կենսագործեն առաջավորների փորձը։ Դրան հասնելու համար ագիտատորները կառուցող բանվորների մեջ պետք է ծավալեն ագիտացիոն-մասսայական լայն աշխատանք, կիրառելով ագիտացիայի ամենաբազմապիսի ձևերը։ Եվ, որպես կանոն, կարելի է ասել, որ այն շինարարություններում, ուր կառուցողների մեջ տարվող ագիտացիոն մասսայական աշխատանքը դրված է իր բարձրության վրա, այնտեղ մշտապես ապահովված է շինարարությունը ժամկետից շուտ և բարձրորակ կատարելու գործը։ Իսկ որտեղ պարտիական կազմակերպությունների կողմից անքաթող է արված ագիտացիոն-մասսայական աշխատանքը, կամ այն կրում է ձևական բնույթ, այնտեղ սիստեմատիկաբար թերակատարվում են պետական առաջադրանքները։ Այդ կարելի է ցույց տալ մեր մայրաքաղաքում՝ Երևանում կառուցվող նոր բնակելի շենքերի կառուցող կոլեկտիվների աշխատանքից վերցրած օրինակներով։



Ահա Միկոյանի անվան պողոտայի վրա կառուցվող Քաղաքային Սովետի № 17 շենքը։ Նրա աշտարակի վրա երկու ամիս է ինչ ծածանվում է կարմիր դրոշակը. դա Քաղաքային Սովետի փոխանցիկ դրոշակն է, որը շենքի կառուցողները նվաճել են, որպես սոցիալիստական մրցության մեջ հաղթանակ տանողների։ Հենց այդ ծածանվող կարմիր դրոշակը ոգեշնչման մեծ աղբյուր է հանդիսանում շենքը կառուցողների համար։

Շենքը կառուցողները պարտավորվել են այն շահագործման հանձնել Հայաստանում սովետական կարգերի հաստատման 29-րդ տարեդարձին՝ նոյեմբերի 29-ին, պլանով տրված 1950 թվականի հունվարի փոխարեն։ Այդ ոգևորությունը ոչ մի րոպե չթուլացնելուն է ուղղված շինարարության պարտկազմակերպության և ագիտկոլեկտիվի (ղեկավար Վ. Գրիգորյան) ջանքերը։ Շինարարության վրա այդ աչքի է ընկնում ամեն մի քայլափոխում։ Ահա ցուցանիշների տախտակը. բանվորների մեջ արդեն սովորություն է դարձել ամեն օր աշխատանքի անցնելուց առաջ մոտենալ այդ տախտակին։ Յուրաքանչյուր բանվոր այդտեղ տեսնում է, թե ինչպես է աշխատել ինքը, իրենց օղակը, բրիգադան երեկ, ով որքան է վա-

տակել։ Յուրաքանչյուր բանվոր գիտե նաև, որ այդ օրը, ընդմիջման ժամին, իրենց ագիտատորը կպարզաբանի, թե պլանները բարձր ցուցանիշներով կատարողները ինչպես են հասել այդ հաջողություններին, խստորեն կքննադատի ետ մնացողներին։ Եվ ագիտատորների այդ զրույցներին բանվորները մասնակցում են մեծ հետաքրքրությամբ։

Օժանդակ բանվորների բրիգադայի՝ Գ. Մարկոսյանի ղեկավարած օղակը հոկտեմբեր ամսվա առաջին տասնօրյակում սիստեմատիկ կերպով թերակատարում էր իր առաջադրանքները։ Բրիգադայի ագիտատոր Ս. Ամիրյանը ուշադրությամբ ուսումնասիրում էր օղակի աշխատանքը և երբ ամփոփվեցին տասնօրյակի արդյունքները նա այդ հարցին նվիրեց իր զրույցը։ Ագիտատորը կոնկրետ օրինակներով ցույց տվեց, որ օղակը այդ տասնօրյակում վատ աշխատեց, որովհետև նրա ոչ բոլոր անդամներն էին, որ լրիվ օգտագործում էին իրենց աշխատանքի ժամերը, պատրաստի քարերը և շաղախը և մյուս շինանյութերը ժամանակին չէին հասցնում վերամբարձ մեքենային, կամ հեռու էին թափում մեքենայից, որով և դանդաղեցնում էին մյուս օղակների աշխատանքը։ Ագիտատորը



սուր քննադատության ենթարկեց օղակավար Մարկոսյանին։ Մարկոսյանի ոչ բարեխիղճ աշխատանքի մասին խոսեց նաև բրիգադայի մյուս օղակավար Ա. Մոսինյանը, ցույց տալով, թե ինչպես իր օղակի աշխատանքը տուժել է օժանդակ բանվորների օղակի անբավարար աշխատանքի հետևանքով։ Ապա ագիտատորը առաջարկեց օղակավար Գ. Մարկոսյանին զրկել հարվածայինի կոչումից և բրիգադան ընդունեց այդ առաջարկությունը։

Երկու օր հետո օղակավար Գ. Մարկոսյանը ագիտատորին ներկայացրեց իր ղեկավարած օղակի կողմից կնքված սոցիալիստական մրցության նոր պայմանագիրը, որով օղակը պարտավորություն էր ստանձնում ամեն տեսակ շինանյութով լրիվ ապահովել երկու վերամբարձ մեքենաների աշխատանքը, սիստեմատիկ կերպով գերակատարել իր պլանները։ Ագիտատոր Ամիրյանը խոստացավ օգնել Մարկոսյանի օղակին՝ վերցրած պարտավորությունը կատարելու համար։ Եվ ահա շատ չանցած սպասարկող բանվորների օղակն անցավ շինարարության առաջավոր օղակների շարքը և այժմ իր պլանները կատարում է 170—180 տոկոսով։

Շինարարության ագիտատորների ղեկավարությամբ բոլոր բանվորները ներգրավ-

ված են սոցիալիստական մրցության մեջ և ունեն սոցմրցության անհատական պայմանագրեր։ Ագիտատորները սիստեմատիկ կերպով ստուգում են այդ պայմանագրերի կատարման արդյունքները, ոգևորում առաջավորներին, մասսայականացնում նրանց փորձը, օգնում հետ մնացողներին՝ հասնելու առաջավորներին։

Գերազանց որակի համար պայքարող քարտաշների բրիգադայում, որի ագիտատորըն է Ա. Մելյանը, բոլոր բանվորները սիստեմատիկաբար գերակատարում են իրենց առաջադրանքները, իսկ ամբողջ բրիգադան իր պլանները կատարում է 160—170 տոկոսով։ Այդպես ստախանովաբար աշխատելով բանվորները ամսական վաստակում են 2.200—2.800 ռուբլի աշխատավարձ։ Իր պլանները 170—175 տոկոսով է կատարում նաև որմնադիրների բրիգադան, որի ագիտատորն է Բ. Բաբայանը։

№ 17-րդ շենքի ագիտկոլեկտիվի լավագույն աշխատանքը օրինակ է ծառայում Քաղաքային Սովետի մյուս շինարարությունների ագիտկոլեկտիվների համար։ Հաճախակի են այնպիսի դեպքերը, երբ № 17-րդ շենքի ագիտատորների աշխատանքին ծանոթանալու համար այնտեղ են գալիս ուրիշ կառու-



ցումների ագիտատորները և իրենց մոտ տեղափոխում նրանց աշխատանքի փորձը։ Այսպես, օրինակ, Կուլտուրայի տան վերակառուցման վրա աշխատող կոլեկտիվը մայիս և հունիս ամիսներին խոշոր չափով թերակատարեց շինարարության պլանները։ Քարտաշների բրիգադայի ագիտատոր Ա. Մարտիրոսյանը մի քանի բանվորների հետ գնացին № 17-րդ շենքը և մանրամասն ծանոթացան այնտեղի քարտաշների բրիգադայի աշխատանքների հետ։ Նրանք հատկապես ուսումնասիրեցին անվանի քարտաշ վարպետ Կ. Վարդանյանի աշխատանքի առաջավոր մեթոդները։ Գալով իրենց մոտ ագիտատոր Ա. Մարտիրոսյանը շինարարության ղեկավարության առաջ խնդիր դրեց՝ իրենց ևս ապահովել լավագույն պողպատից պատրաստված կտրիչներով, իսկ բանվորներին պատմեց № 17-րդ շենքի քարտաշների աշխատանքի մեթոդների մասին։ Եվ ահա, ստանալով նոր կտրիչները և աշխատելով նոր ձևով, քարտաշների բրիգադան սկսեց գերակատարել իր պլանները, տալով միայն բարձր որակով տաշված քարեր։ Քարտաշների օրինակին հետևեցին նաև որմնադիրները։ Շինարարության կոլեկտիվի մեջ սոցիալիստական մրցությունն ստացավ կոնկրետ,

գործնական բնույթ և դրա շնորհիվ հուլիս և օգոստոս ամիսներին ամբողջ կոլեկտիվը կատարեց իր պլանները։

Քաղաքի շինարարության այս առաջավոր կոլեկտիվների կողքին դեռ կան այնպիսիները, որոնք սիստեմատիկ կերպով թերակատարում են իրենց առաջադրանքները, ձգձգում են շենքերը շահագործման հանձնելու ժամկետները։ Այդպիսի շինարարական օբեկտների թվին են պատկանում, օրինակ փակ շուկան, Մետաքսի գործարանի աշխատողների համար կառուցվող բնակելի շենքը։ Այդտեղ ագիտացիոն-մասսայական աշխատանքը կրում է ձևական բնույթ, չկա ցուցադրական ագիտացիա, ագիտատորները դեպքից-դեպք ունեցած իրենց զրույցներում բավարարվում են միայն թերթերի բարձրաձայն ընթերցանությամբ։

Շինարարական սեզոնի եռուն և վճռական ամիսներն են. Նորակառույցների պարտիական կազմակերպությունները և ագիտկոլեկտիվները պետք է լայնորեն ծավալեն ագիտացիոն-մասսայական աշխատանքը կառուցողների մեջ, մոբիլիզացնեն նրանց ուժերը ժամկետին և բարձր որակով ավարտելու այս տարվա շինարարության ծրագիրը։

Ն. ՍԱՀԱԿՅԱՆ



# Կ Ի Ր Ո Վ Ա Կ Ա Ն

## ՔԱՂԱՔԻ ՎԵՐԱԿԱՌՈՒՅՑՈՒՄԸ

Մինչև Հայաստանում սովետական կարգերի հաստատումը Կիրովականը նեղ, ծուռ ու մութ փողոցներով մի փոքրիկ գյուղաքաղաք էր, ընդամենը 5 հազար ազգաբնակչությամբ։ Այն չուներ արդյունաբերական որևէ ձեռնարկություն։

Սովետական իշխանության տարիներին անճանաչելիորեն փոխվել է քաղաքի տեսքը։ Կիրովականն այժմ իր մեծությամբ ու նշանակությամբ ռեսպուբլիկայի երրորդ քաղաքն է։ Ասֆալտապատ, ընդարձակ, ծառազարդված փողոցներ ու պողոտաներ, որոնցից Ստալինի անվան նորակառույց պողոտան և Կիրովի անվան փողոցը հիացմունք են պատճառում իրենց գեղեցկությամբ։ Բազմաթիվ նորակառույց երկհարկանի և եռահարկանի շենքեր, վաճառատներ ու խանութներ, կինոյի, թատրոնի, կուլտուրայի,

հանգստի ու հասարակական այլ շենքեր, ծաղկանոցներ ու զբոսայգիներ։ Եվ այս ամենը թաղված ծառ ու ծաղկի, թավ կանաչի մեջ, ահա Կիրովականի արտաքին տեսքն այսօր։

Բայց Կիրովականը ծաղկող, անընդհատ բարգավաճող քաղաք է։ Գնալով ավելանում է նրա արդյունաբերական ձեռնարկությունների, բնակելի ու հասարակական շենքերի թիվը, բացվում են նորանոր փողոցներ ու հրապարակներ։ Քաղաքում կատարվող հենց միայն այս տարվա շինարարության ծավալը ցույց է տալիս, թե մեր կառավարությունը ինչպիսի խոշոր տեմպերով է վերակառուցում Կիրովականը։ Այս տարի քաղաքում կառուցվում են արդյունաբերական երեք խոշոր ձեռնարկություններ, 15 երկհարկանի և եռահարկանի բնակելի պետական շենքեր, մի քանի հարյուր անհատական բնակարաններ, 2 դպրոց, մի խոշոր կամուրջ Տանձուտ գետի վրա, ֆիզկուլտուրայի ստադիոն, շարունակվում է Ստալինի անվան պողոտայի և Կիրովի անվան փողոցի շինարարությունը, սկսվել են Կենտրոնական՝ Լենինի անվան հրապարակի բացման և ձևավորման աշխատանքները։ Մեծ թափով առաջ են մղ-



վում ջրմուղի ընդարձակման և կոյուղու կառուցման աշխատանքները։

Առանձնապես մեծ թափ է տրված քաղաքի կանաչազարդմանը։ Վերջին երկու տարվա ընթացքում քաղաքում և նրա շրջակայքում տնկվել է մոտ մեկ միլիոն ծառ։ Գիշերը քաղաքը պայծառ կերպով լուսավորված է էլեկտրական լուսավորությամբ։

## ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆ

Ինչպես արդեն ասվեց, մինչև սովետական կարգերի հաստատումը Կիրովականում (այն ժամանակ՝ Ղարաքիլիսա), չկար արդյունաբերական որևէ ձեռնարկություն։ Այժմ Կիրովականը մեր ռեսպուբլիկայի արդյունաբերական խոշոր կենտրոններից մեկն է. այն ունի տասնյակ արդյունաբերական ձեռնարկություններ։ Դրանց թվում են Ալ. Մյասնիկյանի անվան քիմիական պարարտանյութերի գործարանը, որը համամիութենական սոցիալիստական մրցության մեջ քայլում է առաջավորների շարքում։ Կորդի ֆաբրիկան, որը գործվածքեղեն է մատակարարում ավտոդողերի արդյունաբերությանը։

Անցյալ տարի շահագործման հանձնվեց Կաթի-մսի մինիստրության Միքենաշինա-

կան գործարանը, որն ունի նորագույն սարքավորում։ Գործարանը կաթնարդյունաբերության համար պատրաստում է սառցարաններ, պանրի եփման կաթսաներ, կաթի շարժական գործարաններ, որոնք սարքավորված են ավտոմեքենայի վրա և նախատեսված են յայլաղներում կաթը վերամշակման ենթարկելու համար և այլ մեքենաներ ու սարքավորումներ։

Իր արտադրած բարձրորակ տաք մուշտակներով և ձեռնոցներով հայտնի է Կիրովականի մուշտակի ֆաբրիկան։ Այս տարվանից նա սկսել է արտադրել նաև ներկված մուշտակներ։

Ստալինյան նոր հնգամյակի նորակառույցներից է Տրիկոտաժի ֆաբրիկան, որն ամբողջովին կահավորված է սովետական ավտոմատ լավագույն մեքենաներով։ Այս տարի ֆաբրիկան տալու է 750 հազար կտոր սպիտակեղեն, իսկ ըստ հնգամյա պլանի եկող տարի նրա կարողությունը կհասնի 2 միլիոն 300 հազար կտորի։

Ազգաբնակչության համար բազմապիսի լայն սպառման առարկաներ՝ կահույք, կոշկեղեն, տնային գործածության առարկաներ, ինչպես նաև շինանյութ են արտադրում



տեղարդկոմբինատի ձեռնարկությունները ու արհեստանոցները։

Արագ թափով առաջ է գնում քաղաքի նորակառույց արդյունաբերական ձեռնարկությունների՝ կղմինդրի, գարեջրի գործարանների շինարարությունը։ Կղմինդրի գործարանը քաղաքի շինարարության համար տարեկան կտա 3 միլիոն կղմինդր և մեկ միլիոն աղյուս։ Գարեջրի գործարանը, որը շահագործման կհանձնվի եկող տարի, լրիվ չափով կբավարարի քաղաքի ազգաբնակչության պահանջները։

Թե ինչպիսի արագ տեմպերով է զարգանում Կիրովականի արդյունաբերությունը, այդ պարզ երևում է հետևյալ թվերից. նախապատերազմյան 1940 թվականի հետ համեմատած, քաղաքի արդյունաբերական ձեռնարկություններն այժմ տալիս են երկու և կես անգամ ավելի արտադրանք. արտադրության աճը 1949 թվականին, 1948 թվականի հետ համեմատած, կազմում է 149 տոկոս։

Արդյունաբերության զարգացման հետ միասին աճել են նոր տեխնիկային տիրապետած լավագույն կադրեր՝ բանվորներ, վարպետներ, ինժեներներ ու տեխնիկներ, արտադրության ղեկավար աշխատողներ, որոնք

հաջողությամբ կատարում են ստալինյան նոր հնգամյակի պլանները։ Քաղաքի արդյունաբերությունը այս տարվա 7 ամսվա պլանները կատարեց 105,2 տոկոսով։

## ԿՈՒԼՏՈՒՐԱ ԵՎ ԼՈՒՍԱՎՈՐՈՒԹՅՈՒՆ

Երկու տարրական դպրոց ընդամենը 315 աշակերտներով— ահա թե ինչ էր ներկայացնում իրենից ժողովրդական կրթության վիճակը մինչ սովետական Ղարաքիլիսայում։

Սովետական իշխանության տարիների ընթացքում, ինչպես մեր ամբողջ ռեսպուբլիկայում, այնպես և Կիրովականում ժողովրդական կրթության գործում տեղի ունեցավ շեշտակի հեղաշրջում։ Քաղաքն այժմ ունի 5 միջնակարգ, 2 յոթնամյա, 2 տարրական և 2 բանվորի դպրոցներ։ Բացի այդ, քաղաքում գործում են մի շարք ուսումնարաններ ու տեխնիկումներ, որոնք որակյալ կադրեր են պատրաստում արդյունաբերության, գյուղատնտեսության, կուլտուրայի և լուսավորության, առողջապահության բնագավառներում աշխատելու համար։

Այս տարի իր 16-րդ շրջանավարտներն է տալիս Գյուղատնտեսական տեխնիկումը։ Դրանք պտղաբույծներ են, անասնաբուժակ-



ներ, դաշտավարներ, մեղվաբույծներ։ Կիրովականում է գտնվում մեր ռեսպուբլիկայում առաջին անտառատեխնիկումը, որը մասնագետ կադրեր է պատրաստում անտառային տնտեսության զարգացման համար։ Առողջապահության ֆրոնտում աշխատելու համար ամեն տարի տասնյակ շրջանավարտներ է տալիս բուժական դպրոցը։ Քաղաքի աշխատավորների երեխաները երաժշտական կրթություն են ստանում երաժշտական դպրոցում։ Կիրովականը իրավամբ պարծենում է իր սպորտդպրոցով։ Քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների համար որակյալ բանվորներ է պատրաստում արհեստագործական ուսումնարանը։

Կիրովականի աշխատավորությունն ապրում է կուլտուրական կյանքով, օգտվելով քաղաքում ստեղծված կուլտուրայի բազմաթիվ օջախներից։ Քաղաքի աշխատավորության տրամադրության տակ են դրված 11 գրադարաններ, կուլտուրայի տունը, քաղաքային ակումբը, Ալ. Մյասնիկյանի անվան և Երկաթուղային կայարանի ակումբները, ուսուցչի տունը, հանգստի և կուլտուրայի պարկը։

Կիրովականցիների սիրելի վայրերն են հանդիսանում շրջանային պետական թատ-

ռոնը և քաղաքային կինոն։ Կիրովականի շրջանային պետական թատրոնը ռեսպուբլիկայի լավագույն թատրոններից է։ Քաղաքի աշխատավորները նրա բեմի վրա դիտում են ինչպես անցյալի, այնպես և ժամանակակից լավագույն դրամատիկական գործեր։ Քաղաքում լույս է տեսնում շրջանային թերթը, գործում է ռադիոհանգույցը։

## ԱՌՈՂՋԱՊԱՀՈՒԹՅՈՒՆ

Թե ինչպիսի վիճակում է գտնվել ժողովրդական առողջապահության գործը նախասովետական Ղարաքիլիսայում այդ կարելի է տեսնել հետևյալ երկու թվերից. ամբողջ Ղարաքիլիսայի գավառում կար մեկ բժիշկ և մեկ մանկաբարձուհի, պետությունը ազգաբնակչության յուրաքանչյուր շնչի վրա առողջապահության գծով տարեկան ծախսում էր միայն 52 կոպեկ։

Սովետական իշխանության տարիներին քաղաքի ազգաբնակչության համար ստեղծված են կյանքի առողջապահական հիանալի պայմաններ։ Այդ կատարվել է երկու ուղղությամբ՝ բարեկարգվել է քաղաքը, ստեղծվել են սանիտարական նորմալ պայմաններ և ազգաբնակչության համար անհրաժեշտ բոլոր տեսակի բուժհիմնարկներ։ Կիրովականն



այժմ ունի 2 հիվանդանոց, 3 պոլիկլինիկա, 2 դիսպանսեր, մանկական և կանանց կոնսուլտացիաներ, ծննդատուն, կաթնախոհանոց և կաթկայան, մալարիային և շտապ օգնության կայաններ, դեղատներ։ Բժշկական տեղամասեր կան քաղաքի խոշոր գործարաններում։ Կիրովականում է գտնվում «Հայաստան» սանատորիան, որ ամեն տարի իրենց առողջությունը վերականգնում են հարյուրավոր աշխատավորներ։ Այժմ միայն Կիրովական քաղաքում կա 81 բժիշկ և 128 միջին բուժպերսոնալի աշխատող։ Պետական բյուջեյով 1949 թվին քաղաքի ազգաբնակչության յուրաքանչյուր շնչի վրա ծախսվելու է 90 ռուբլի։

Քաղաքի աշխատավորության, հատկապես երիտասարդության առողջապահության գործին է ծառայելու Տանձուտ գետի ափին կառուցվող Ֆիզկուլտուրայի ստադիոնը, որը զբաղեցնելու է 7 հեկտար տարածություն և ունենալու է իր խաղադաշտը, լողարանը, խաղերի բազմազան հրապարակներ և տրիբունա՝ 12 հազար մարդու համար։

## ԲՈՒՍԱԲԱՆԱԿԱՆ ԱՅԳԻՆ

Քաղաքի գիտական և կուլտուրական կարևոր հաստատություններից է Հայկական

ՍՍՌ Գիտությունների Ակադեմիայի բուսաբանական այգին։ Այգու գիտական աշխատողները, միչուրինյան գիտության լայն կիրառումով, աճեցրել են բազմաթիվ այնպիսի բույսեր, որոնք սովոր չեն Հայաստանի կլիմայական պայմաններին։ Այգում աճեցված են 900 տեսակից ավելի տեղական, սիբիրյան, ղրիմյան, կովկասյան, մերձարեվադարձային ծառեր, բույսեր և թփեր։ Աճեցված է ավելի քան 200 տեսակ ծաղիկ։ Բուսաբանական այգին գիտական բազա է հանդիսանում մեր ռեսպուբլիկայի քաղաքներն ու գյուղերը դեկորատիվ ծառերով ու բազմերանգ ծաղիկներով կանաչապատելու և զարդարելու համար։

***

Լոռվա գեղատեսիլ ու փարթամ բնության գրկում տարածված, բոցաշունչ բոլշևիկ Սերգեյ Միրոնովիչ Կիրովի անունը կրող սոցիալիստական քաղաքը այսօր դարձել է բարեշեն, եռուն կյանքով ապրող քաղաք։ Հսկայական տեմպերով վերակառուցելով քաղաքը, սովետական իշխանությունը ոչ մի միջոց չի խնայում որպեսզի այն դառնա կոմունիզմի դարաշրջանի մարդկանց վայել հիասքանչ բնակավայր։

Լ. ՂԱՐԻԲՅԱՆ



# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

## ԲՈՒԼՂԱՐԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ԲԵՌՆԱՏԱՐ ԱՎՏՈՄԵՔԵՆԱՆ

Բուլղարական մեքենաշինարարները նոր խոշոր հաջողություններ ձեռք բերեցին։ Սոֆիայի մեխանիկական գործարանի կոլեկտիվը, որի դիրեկտորն է ինժեներ Պ. Պետրուշևը, բաց թողեց բուլղարական առաջին երեք տոննանոց ավտոմեքենան։

ՏԱՍՍ-ի Սոֆիայի թղթակցի հետ ունեցած զրույցի ժամանակ, Բուլղարիայի Ժողովրդական ռեսպուբլիկայի ինդուստրիայի մինիստր Վիլկո Գոչևն ասաց.

— Առաջին երեք տոննանոց բեռնատար ավտոմեքենան բաց թողած Սոֆիայի Մեխանիկական գործարանի բանվորների հաղթանակը բացառիկ նշանակություն ունի Բուլղարիայի համար։ Առաջ մեր գործարանները չէին արտադրում ո՛չ ավտոմոբիլ, ո՛չ էլ նույ-

նիսկ ավտոմոբիլի պահեստի մասին։ Հայրենական ճակատի ժողովրդական իշխանությունը, կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ,— ասաց մինիստրը,— բուլղարական ժողովրդի և բուլղարական բանվոր դասակարգի առաջ ստեղծագործական լայն հնարավորություններ է բաց արել մեր երկրում սոցիալիզմ կառուցելու համար, հենվելով մեծ Սովետական Միության և մեր առաջնորդ և ուսուցիչ Ի. Վ. Ստալինի անշահախնդիր օգնության վրա։ (ՏԱՍՍ)

---

## ՀԱՑԻ ՔԱՐՏԵՐԻ ՎԵՐԱՑՈՒՄԸ ՀՈՒՆԳԱՐԻԱՅՈՒՄ

Հունգարիայի մինիստրների խորհրդի որոշմամբ այս տարվա սեպտեմբերի 1-ից երկրի ամբողջ տերիտորիայում վերացված են հացի քարտերը։ Այս որոշման ընդունմանը նպաստեցին լավ բերքը և հացամթերումների կատարման հաջող ընթացքը։

Հունգարիայում քարտային սիստեմը գոյություն ուներ պատերազմի սկզբից, այսինքն 8 տարի։ Վերջին տարիների ընթացքում հունգարական կառավարությունը աստիճանաբար վերացնում էր ազգաբնակչությանը արդյու-



նաբերական ապրանքների և մթերքների մատակարարման քարտային սիստեմը։ Սակայն այդ հացի վրա չէր տարածվում։ Իսկ այժմ արդեն բացվում է հացի ազատ վաճառք։

---

## ՄՅՈՒՋԵՏԵ ՀՈՎՏԻ ՎԵՐԱԾՆՈՒՆԴԸ

Ադրիատիկ ծովի ափերից ոչ հեռու դարերով տարածված էին Մյուզետե հովտի բերրի, սակայն ճահճային հողերը։

Ալբանիայում ժողովրդական իշխանության հաստատումով արշավանք սկսվեց այդ ճահիճների վրա։ 1947 թվին այդ հովիտը եկան մարդիկ։ Նրանք սկսեցին ջրանցքներ փորել, ջրանցքներ, որոնց ընդհանուր երկարությունը կազմում է 113 կիլոմետր և ընդգրկում է 16 հազար հեկտար տարածություն։

Ճահճից խլված հողի վրա արդեն կանաչին են տալիս ցիտրուսային երիտասարդ ծառերի խմբերը, բարձրացել է փարթամ աճած կանաչը։ Մոտակա ժամանակներում ալբանական գյուղացիները ծովափնյա հովտում կհավաքեն հացահատիկի և ցիտրուսային կուլտուրաների առատ բերք։

## ԿՈՒՐՍԵՐ ԱՆԳՐԱԳԵՏՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Լեհական կառավարությունը դրամական խոշոր միջոցներ է հատկացնում ազգաբնակչության միջից կապիտալիզմի ծանր ժառանգության՝ անգրագիտության վերացման համար։ Մինչև այս տարվա վերջը այդ աշխատանքի վրա կծախսվի 605 միլիոն զլոտ։

Լեհական դեմոկրատական ռեսպուբլիկայի Սեյմի օրենքների համաձայն առաջիկա ուսումնական տարին հանդիսանալու է անգրագետների և կիսագրագետների մասսայական ուսուցման սկիզբը քաղաքում և գյուղում։ Այժմ ավարտվում է անգրագետների հաշվառումը և դասընթացների կազմակերպումը, որտեղ նրանք պետք է սովորեն։ Արդեն կազմակերպված է 10 հազար այդպիսի դասընթացներ։

---

# ԿԱՊԻՏԱԼԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

## ԹՅՈՒՐՔԱԿԱՆ ԳՅՈՒՂԻ ԹՇՎԱՌ ՎԻՃԱԿԸ

Թյուրքական թերթերի խոստովանությամբ այս տարի թյուրք գյուղացու համար «սովի և պակասության» տարի է։ Շատ տեղերում ցանքն այնքան վատ է, որ գյուղացիները գերադասում են չհնձել, այլ թողնել, որ անասունները արածեն։

Թյուրքիայի գյուղատնտեսության հետադիմության հիմնական պատճառը կառավարող շրջանների քաղաքականությունն է, որոնք երկրում պահպանում են ճորտատիրական հարաբերությունները, գյուղացիության հիմնական մասսային զրկելով հողից։ Մանր, փոշիացած գյուղացիական տնտեսությունների առկայությունը երկրում,— որոնք դրա հետ միաժամանակ զրկված են արտադրական տարրական միջոցներից (հայտնի է, որ գյուղացիների մեծ մասը մինչև այսօր էլ հողը հերկում է պապենական չութով), որոնք հաճախ չունեն քաշող ուժ, ծանրաբեռնված են ուժից վեր հարկերով, — Թյուրքիայի գյուղատնտեսության զարգացումը կասեցնող գործոններից մեկն է։ Թուրքիայի հողագործության մինիստր Օրալի տվյալներով թյուրք գյուղացիները ներկայումս ունեն 500—600 հազար գութան,

այն ժամանակ, երբ դրանց կարիքը հասնում է 2,5 միլիոնի։

Դրա համար էլ գյուղացիները երբեք, նույնիսկ բերքառատ տարիներին, չեն ազատվում կարիքից։

«Ցաղմուր վե Թոփրաք» ժուռնալը նկարագրելով Փոլաթլար գյուղում գյուղացիական տնտեսության վիճակը, հետևյալ տվյալներն է բերում այդ գյուղի գյուղացիների եկամուտների և ծախսերի մասին։ Գյուղում կա 35 տնտեսություն, որոնցից 5-ը խոշոր են, 10-ը՝ միջակ, և 20-ը՝ մանր ու հողազուրկ։ Խոշոր տնտեսությունների եկամուտը կազմում է 2500 լիրա, ծախսը՝ 1689 լիրա։ Մանր հողագործի եկամուտը կազմում է մոտ 500 լիրա, իսկ ծախսը՝ 925 լիրա։ Սակավահող գյուղացիները պարտքի տակից դուրս չեն գալիս, զրկվում են հողից և դառնում բատրակ։ Թյուրք գյուղացու դրության վատթարացումն է վկայում ծնունդի խիստ անկումը Թյուրքիայում։ «Միլլեթ» ժուռնալի տեր ու խմբագիր Քութայը հետևյալ տվյալներն է բերում Թյուրքիայում ծննդաբերության մասին։ 1936 թվին բնակչության միջին աճը, յուրաքանչյուր հազար մարդում կազմում էր 22,9 1940 թվին՝ 18, 1945 թվին՝ 10,9։ «Կյանքը,— գրում է Քութայը,— գնալով ավելի է դժվարանում։ Նորածինները մեռնում են։ Ամուսնությունը դառնում է յուրատեսակ անհասանելի իդեալ, որովհետև կյանքի թանկությունը, բնակարանային դժվարությունները ստիպում են հրաժարվել ամուսնությունից։ Ամուսնալուծությունների թիվն ավելանում է»։ Մծկեր երեխաների մահացությունը թյուրքական գյուղում հասնում է 60 տոկոսի։



Թյուրքական գյուղը կուլտուրական տեսակետից ամենաայլանդակ պատկեր է ներկայացնում։ Վերջերս Անկարա է վերադարձել Թյուրքիայի ուսանողական միության անդամների մի խումբ, որն այցելել է Դիարբեքիրի շրջանը՝ Արևելյան Անատոլիայի բնակչության կուլտուրական և կրթական մակարդակի պայմանները ուսումնասիրելու համար։ «Հուրիեթ» թերթը հրապարակել է այդ ուսանողների զրույցը ժուռնալիստների հետ։ «Մեկ ամսվա ընթացքում,— ասել է ուսանողական միության նախագահ Օրխան Արիման,— մենք եղանք 150 գյուղերում։ Մենք հանդիպեցինք տեղական աղաների (կուլակների ծան. խմբ.) անսահմանափակ իշխանության փաստերի։ Բացի դրանից, լինում են կանանց վաճառելու դեպքեր։ Մեկ կինն արժե 3000 լիրա... Երբ որևէ գյուղում դպրոց է բացվում, գյուղացիները չեն կարող իրենց զավակներին ուսման ուղարկել, որովհետև բանվորական ուժի կարիք են զգում։ Իսկ եթե գյուղում կալվածատեր կա, ապա նա չի թողնում, որ գյուղացիները դպրոց գնան, չցանկանալով, որ նրանք գրագետ դառնան»։

—◆—

# ՊԼԱՆՆԵՐ, ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## I

## ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ ԲՈԼՈՐ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԻ ԺԱՄԱՆԱԿԻՆ ԵՎ ԱՆԿՈՐՈՒՍՏ ԿԱՏԱՐՈՒՄԸ ԿՈԼԽՈԶՆԵՐԻ ԵՎ ՄՏՍ ԿԱՅԱՆՆԵՐԻ ԳԼԽԱՎՈՐ ԽՆԴԻՐՆ Է

*1. Բերքը ժամանակին և անկորուստ հավաքելը կոլխոզների կողմից տեխնիկական կուլտուրաների գծով պետական պարտավորությունների կատարման հիմնական պայմանն է։*

*2. Ոչ մի գրամ բամբակ չթողնենք դաշտում, այն հավաքենք մաքուր և ժամանակին, կատարենք ու գերակատարենք բամբակի հանձնման պետական պլանը։*

*3. Բամբակի ժամանակին և անկորուստ հավաքելը կապահովի բամբակի բարձր բերք աճեցնելու վերաբերյալ ընկեր Ստալինին տված խոստման կատարումը։*

*4. Ծխախոտի բերքահավաքի հաջող կատարումը և ստացած բերքի հետագա վերամշակումը (տեսակավորում, շարում, չորացում, պահպանում) ծխախոտագործության ասպարեզում ամենապատասխանատու աշխատանքներն են։*



*5. Շաքարի ճակնդեղի բերքահավաքի հաջող կատարման համար մոբիլիզացնենք կոլխոզների բոլոր աշխատող ձեռքերը, օգտագործենք փոխադրական բոլոր միջոցները՝ բերքը ժամանակին և անկորուստ պահեստները փոխադրելու համար։*

*6. Պետական մթերման օրգանների յուրաքանչյուր աշխատողի սրբազան պարտականությունն է՝ կոլխոզների հանձնած հումքը ընդունել առանց ձգձգման և այն պահել անկորուստ, պահպանել հափշտակումներից։*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՍՌՄ Մինիստրների Սովետում և ՀամԿ(բ)Պ Կենտկոմում: 1949 թվի բերքահավաքը և գյուղատնտեսական մթերքների մթերումները անցկացնելու մասին»: *«Ս. Հ.»-ի 1949 թ. հունիսի 17-ի համարը։*

Բոլշևիկյան կազմակերպվածությամբ հավաքենք բամբակի բերքը: *«Ս. Հ.»-ի 1949 թ. օգոստոսի 30-ի առաջնորդողը։*

Բերքի կորուստների դեմ մղվող պայքարը գյուղական պարտկազմակերպությունների կարևոր խնդիրն է: *«Ս. Հ.»-ի 1949 թ. հուլիսի 28-ի առաջնորդողը։*

А. ГОРЧАКОВ. Уборка урожая и задачи агитаторов. Блокнот агитатора». 1949 г. № 19.

II.

## ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԿՈՂՄՆԱԿԻՑՆԵՐԻ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԿՈՆՖԵՐԱՆՍԸ ՄՈՍԿՎԱՅՈՒՄ

*1. Անգլո-ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականությունն՝ ՍՍՌՄ և ժողովրդական դեմոկրատիայի երկրների դեմ նոր պատերազմի հրահրման նրանց պլանների մերկացումը խաղաղության կողմնակիցների Համամիութենական կոնֆերանսում։*

*2. Տիտոյի կլիկը իմպերիալիստական գիշատիչների գործակալությունն է և ակտիվ կերպով օգնում է նրանց նոր պատերազմ հրահրելու գործում։*

*3. Օր-օրի աճում և հզորանում են սոցիալիզմի և դեմոկրատիայի ճակատի ուժերը։*

*4. ՍՍՌՄ-ն խաղաղության և դեմոկրատիայի համար մղվող պայքարի առաջնորդն է։*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ընկեր Ստալինի զեկուցումը. «Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 26-րդ տարեդարձի մասին»։ Ի. Վ. Ստալին, «Սովետական Միության Հայրենական մեծ պատերազմի մասին». *Հայպետհրատ, 1946 թիվ։*



Կոմյունիկե կոմունիստական պարտիաների ինֆորմացիոն բյուրոյի։ *«Ս. Հ.»-ի 1948 թ. հունիսի 30-ի համարը։*

Ընկեր Ժդանովի զեկուցումը. «Միջազգային դրության մասին» մի քանի կոմպարտիաների ինֆորմացիոն խորհրդակցությունում։ *«Պարտիական կյանք», № 5, 1947 թ.։*

Խաղաղության պաշտպանությունը և պայքարը նոր պատերազմի հրձիգների դեմ։ Ընկեր Ն. Ս. Տիխոնովի զեկուցումը խաղաղության կողմնակիցների համամիութենական կոնֆերանսում 1949 թ. օգոստոսի 25-ին։ *«Պրավդա» 26-ին օգոստոսի, 1949 թ.։*

Հանուն խաղաղության, ընդդեմ պատերազմի հրձիգների։ *«Պրավդայի» 1949 թ. օգոստոսի 26-ի առաջնորդողը։*

Խաղաղության կողմնակիցների Համամիութենական կոնֆերանսի նյութերը։ *Տես «Պրավդա», «Ս. Հ.», «Կոմունիստ» թերթերում 1949 թ. օգոստոսի 26-ից 31-ի համարներում զետեղված նյութերը։*

Սովետական կառավարության պատասխան նոտան Հարավսլավիայի կառավարությանը։ *«Ս. Հ.»-ի 1949 թ. օգոստոսի 13-ի համարը։*

Դիմակը պոկված է։ *«Պրավդայի» 1949 թ. օգոստոսի 13-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1949 թվի օգոստոսի 14-ի համարում։*

Սովետական կառավարության պատասխանը սովետական քաղաքացիներին ապօրինի կերպով ձերբակա-

նելու առթիվ Հարավսլավյան կառավարության նոտա-
յին: «Ս. Հ.»-ի 1949 թ. օգոստոսի 21-ի համարը:
Ցոցիալիզմից դեպի ֆաշիզմ: «Պրավդայի» 1949 թ.
օգոստոսի 23-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի
1949 թ. օգոստոսի 24-ի համարում
Սովետական կառավարության 1949 թ. օգոստոսի
29-ի նոտան Հարավսլավյան կառավարությանը: «Ս.
Հ.»-ի 1949 թ. օգոստոսի 31-ի համարը:
ՆԻԿՈՍ ԶԱԽԱՐԻԱԴԻՍ. Տիտոյի կլիկը թիկունքից
հարված է հասցնում ժողովրդական դեմոկրատական
Հունաստանին: «Ս. Հ.» 1949 թ. օգոստոսի 7:

—◆—

# Ի՞ՆՉ ԿԱՐԴԱԼ

**Օ. ԿՐԵՄՆՅՈՎԱ.— «Քաղաքական ագիտացիայի փոքր ձեռնարկություններում», Հայպետհրատ, 1943 թ.:**

«Ագիտատորի գրադարան»-ի սերիայով լույս տեսած վերոհիշյալ բրոշյուրը նվիրված է Մոսկվայի առաջավոր ագիտկոլեկտիվների և ագիտատորների փորձին, որոնք, մասսաների մեջ կատարած իրենց քաղաքական աշխատանքով օժանդակում են ժամկետից շուտ կատարելու հնգամյա պլանով նախատեսված առաջադրանքը: Մայրաքաղաքի առաջավոր ձեռնարկություններում կատարվող քաղաքական ագիտացիոն աշխատանքի հարուստ փորձով ցույց է տրված, թե ինչպես պետք է կազմակերպել ու գլխավորել մասսաների քաղաքական և աշխատանքային ակտիվության դաստիարակության գործը, սոցիալիստական մրցության ծավալումը:

Բոլշևիկյան ագիտացիայի կենտրոնական խնդիրներից մեկն է հանդիսանում աշխա-

տավորներին սովետական հայրենասիրության և սովետական ազգային հպարտության ոգով դաստիարակելը։ Սովետական Հայրենասիրության պրոպագանդան չի կարող կտրված լինել մեր շինարարության ընթացիկ խնդիրներից։ Սովետական Հայրենասիրությունը գործոն է, այն դրսևորվում է կոնկրետ գործերի մեջ։ Մոսկվայի լավագույն ագիտատորները իրենց ամենօրյա աշխատանքում լայնորեն օգտագործում են քաղաքական ագիտացիայի բազմատեսակ ձևերն ու մեթոդները, հմտորեն կապում են քաղաքական հարցերը ձեռնարկության արտադրական կյանքի հետ։ Արտադրական ձեռնարկությունում կազմակերպվող յուրաքանչյուր խմբակային և անհատական զրույց, լրագրերի բարձրաձայն ընթերցանություն, բանվորական միտինգ, ցուցադրական ագիտացիա, միշտ ուղղված է մի նպատակի՝ բարձրացնել աշխատավորների սոցիալիստական գիտակցությունը, ուժեղացնել նրանց մեջ սովետական հայրենասիրության զգացմունքը, հասնել ստալինյան հնգամյա պլանի կատարմանն ու գերակատարմանը։

Բրոշյուրում հանգամանորեն արված է մայրաքաղաքի ագիտատորների աշխատանքը, նրանք բոլշևիկյան բոցաշունչ խոսքով և



հերոսական աշխատանքի անձնական օրինակով մոբիլիզացնում են աշխատավորների ուժերը, աշխատանքի արտադրողականության և թողարկվող արտադրանքի որակի բարձրացման համար, տարածում աշխատանքի առաջավոր մեթոդներ։ Մոսկվայի առաջավոր ձեռնարկությունների կոլեկտիվները նախաձեռնողները հանդիսացան արտադրության շահութաբերության համար, արտապլանային սոցիալիստական կուտակումներն ավելացնելու, պետական յուրաքանչյուր կոպեկը խնայելու համար ծավալված հայրենասիրական շարժման մեջ։ Մոսկվայի ագիտատորների աշխատանքի փորձը ցույց է տալիս, որ ձեռնարկություններում մղվող ագիտացիան նպաստում է կարևորագույն ժողովրդա-տնտեսական խնդիրների լուծմանը, բարձրացնում մասսաների ստեղծագործական նախաձեռնությունը և աշխատավորներին դաստիարակում կոմունիստական ոգով։

Բրոշյուրի վերջում տրված է Մոսկվայի արտադրական ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունների՝ մասսաների մեջ մղվող քաղաքական ագիտացիայի կազմակերպիչների ու ղեկավարների աշխատանքի փորձը։

ԳԻՆԸ 50 ԿՈՊ.

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Երկեր, 9-րդ հատոր։

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Երկեր, 10-րդ հատոր։

Դոկտոր Ս. Ա. ԳԵՐՑԵՆԶՈՆ.— Հանցագործությունը ԱՄՆ-ում։ 30 էջ, գինը 1 ռ.։

Դոկտոր Ի. Ե. ԳԼՈՒՉԵՆԿՈ.— Միչուրինյան ուսմունքը բիոլոգիայի մեջ իդեալիզմի դեմ մղվող պայքարում։ 35 էջ, գինը 1 ռ.։

Շ. Մ. Աղաբաբյան.— Վայրի խոտաբույսերի սերմերի հավաքումը և օգտագործումը։ 53 էջ, գինը 2 ռ. 10 կ.։

Պատասխանատու խմբագիր՝ Հ. ԱՅՎԱԶՅԱՆ

ՎՖ 03445 Պատվեր 673 Տիրաժ 3.100

Հայպոլիգրաֆհրատի վարչության № 2 տպարան, Երևան

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении

БЛОКНОТ АГИТАТОРА

№ 16 1949 г.